50 ՏԱՐԻ







# ԼԵԳԵՆԴԱՐ ԳԱՅԸ

(Ծննդյան 80-ամյակի առթիվ)

Մարտն ընթանում էր փոփոխական հաջողությամբ: Բայց ահա սպիտակների ուժեղ գրոհից մեր հեծելազունդը տեղի տվեց: Դրությունը հուսահատական էր: Եվ ո՞վ գիտե, թե ինչպես կվերջանար, եթե Գայը իր հեծելավաշտով չհայտնվեր հանկարծ: Ոգևորության մի ալիք անցավ. «Գայը մեզ հետ է. Գայը կռվում է...» Բոլորը լսել էին Գայի մասին, իսկ ոմանք էլ տեսել նրան: Հարյուրավոր հաղթանակներ էին կապված նրա անվան հետ: Եվ այժմ նա իրենց հետ է, ուրեմն հաղթանակն ապահովված է: Քիչ անց մի նոր ալիք բարձրացավ. «Գայը վիրավորվեց. խփե՛ք այդ անիծվածներին»: Եվ իրոք, թշնամու արձակած երկու գնդակ սուլեցին օդում և վիրավորեցին Գայի աջ բազուկը: Սակայն դա բոլորովին էլ չընկճեց անվեհեր հրամանատարին: Արհամարհելով սոսկալի ցավերը, մի վայրկյան չհեռանալով զինվորներից, ամբողջ գիշեր նա շարունակեց ղեկավարել մարտը:

Առավոտյան, թշնամուն քշելուց հետո, գունատ, սակայն ժպիտը դեմքին, Գայը զինվորների հետ ուրախ զրուցելով գնաց շտաբ: Այնտեղ բաց արին նրա վերքը. ոսկորը փշրված, միսը ծվեն-ծվեն, իսկ ինքը հանգիստ մեկ վերքին էր նայում, մեկ շրջապատողներին: Բոլորն ապշեցին՝ նրա հայացքի մեջ այսպիսի անսասան կամք ու հզորություն տեսնելով: Բայց այդտեղ հավաքված զինվորների մեջ կար մեկը՝ Վասյան, որը կարծես ճակատագրի բերումով միշտ և բոլոր ճակատներում եղել էր Գայի հետ:

Վասյան Կազանի նավաստիների ջոկատից էր և առաջին անգամ չէր, որ զգում էր այդ սև արտահայտիչ աչքերի ուժը: Ու Վասյան մտովի վերհիշեց այն պահը, երբ առաջին անգամ նա դրանք տեսավ:

**1918** թվականն էր: Կազանյան նավաստիների ջոկատը, չուզենալով ենթարկվել հետևակայինների հրամանատարներին, ընդվզել էր: Ու երբ ամբողջ ջոկատը հավաքված ինչ-որ ծրագիր էր մշակում, հանկարծ գալիս է Գայը: Այդ ժամանակ նրան դեռ բոլորը չգիտեին, սակայն նրա վստահ քայլվածքը, խրոխտ կեցվածքն ու համարձակ հայացքը արեցին այն, ինչ չէին կարող անել ամենաճարտար բառերն ու ահաբեկումները: Մի պահ բոլորը քարացան: Նա եկել էր բոլորովին մենակ ու անզեն: Եկել էր այնպես, ինչպես կգնար բարեկամների մոտ: Եվ երբ նրան հարցրին, թե «Որտեղի՞ց ես, ի՞նչ ես անում մեր կողմերում», Գայը պատասխանեց. «Անում եմ այն, ինչ դուք եք պարտավոր անել: Ես, լեռների որդիս, ինչո՞ւ Կովկասում չեմ հիմա, այլ գտնվում եմ հեռու Վոլգայում, ձեզ մոտ: Ազատության համար կռվելիս մի՞թե վոլգացիները չեն օգնել կովկասցիներին...» Եվ Գայն իր համոզիչ ելույթով ու իր գերող տեսքով այնքան դուր եկավ նավաստիներին, որ նրանք որոշեցին կռվել նրա հրամանատարության տակ:

Վասյայի աչքերի առջև կինոժապավենի նման կարծես պտտվում էին իր սիրելի հրամանատարի հետ կապված հերոսական դեպքերը: Նա հիշեց, թե ինչպես Սիզրանի մատույցներում մարտնչելիս Գայի անմիջական ղեկավարությամբ իրենք կարողացան օդանավ խլել թշնամուց: Դա Կարմիր բանակի միակ օդանավն էր: Ի՜նչ ցնծություն էր, երբ հենց Գայն ինքը վարելով օդանավը, հետախուզեց թշնամու թիկունքը և տակտիկական այդ ձևի հիմնադիրը հանդիսացավ: Եվ Վասյան կարծես ուզում



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՐԲԱՏՅԱՆԻ

էր բղավել: Ամեն տեղ Գա՛յ, ամեն տեղ Գա՛յ, այդ անվան հետ է կապված Լենինի հայրենի քաղաքի՝ Սիմբիրսկի, Սամարայի, Օրենբուրգի և ավելի քան 700 քաղաքների ազատագրումը: Սակայն ո՞վ գիտե նրա իսկական անունը: Ինչ խոսք, որ շատ-շատերը չգիտեին: Իսկ Վասյան թեև այն ժամանակ դեռ Գայի հետ չէր եղել, բայց իմացել էր ականատեսներից:

1918 թվականին Սամարայի ծանր օրերին, զինվորներին ղեկավարելու և թշնամու դեմ գրոհի առաջնորդելու հրամանատար ընտրելու համար կայացած մի ժողովում, իրեն տրված հարցին, թե ո՞վ է ինքը և որտեղից է, պատասխանել է. «Սամարղանդից եմ, այնտեղ կռվել եմ Բուխարայի էմիրի դեմ, իմ անունը Հայկ է, Հայկ Բժշկյանց: Հայկ նշանակում է հայ»: Եվ ահա Հայկը, որ Օրենբուրգի տակ վիրավորվելուց հետո, դեռ ոչ լրիվ ապաքինված, մի քիչ կաղալով, սակայն ուղիղ կեցվածքով, հպարտ ու վեհ հայացքով, իր անբռնազբոս վերաբերմունքով համընդհանուրի համակրանքին է արժանանում: Եվ հավաքված զինվորները էսէռների դեմ մղած ահեղ մարտերում իրենց փրկության հույսը կապելով Հայկ Բժշկյանցի հետ, նրան են ընտրել իրենց հրամանատար: Ու քանի որ Հայկ Բժշկյանց անունը դժվարությամբ են արտասանել, ուղղակի Գայ են կոչել նրան:

Վասյան երբեք չէր սթափվի, եթե ներկաներից մեկը չդիմեր Գային, ասելով.

— Ընկեր հրամանատար, գուցե մի կարճ ժամանակով պառկեք հոսպիտալում, մինչև ապաքինվի ձեր ձեռքը:

Գայը հարցական ժպիտը դեմքին պատասխանեց.

— Ինչու՞, ի՞նչ է պատահել ինձ: Գլուխս տեղն է, քայլել կարող եմ: Հիմա դեռ հանգստանալու ժամանակը չէ: Իսկ թե՞ս, դե դա ի՜նչ է որ, կապաքինվի՜...

Դենիկինցիների դեմ տարած այդ օրվա հաղթանակը հանգստանալու մի փոքր հնարավորություն տվեց զինվորներին:

... Կես գիշերը վաղուց արդեն անցել էր: Զորանոցում, եթե կարելի է այդպես անվանել տախտակե այդ կիսաքանդ շինությունը, որ մեկ կամ գուցե երկու օրով միայն զորանոց պիտի կոչվեր, հազվագյուտ անդորրն իր թևերն էր մեղմորեն փռել ու կարծես մոր փոխարեն շոյում էր դժվար հաղթանակից հոգնած, անհանգիստ և սթափ քնով քնած զինվորներին: Օդում ճոճվում էր մի ընդհանուր շնչառություն: Միայն մեկն էր, որ կիսախավարի մեջ, անկյունում, գլուխը հակած սեղանանման մի ինչ-որ բանի, անշտապ թերթում էր իր ծոցատետրի էջերը և, երբեմն վերցնելով մատիտը, հաղթահարելով ձեռքի տանջող ցավը, աշխատում էր գրի առնել իր խոհերն ու զգացումները: Դա Գայն էր: Սակայն այժմ ոչ զորավար, այլ գրող Գայը: Գրելը նրա համար մի կենսական անհրաժեշտություն էր: Ա՜յ թե խաղաղ ժամանակներ լինեին, նա գրիչը ձեռքից ցած չէր դնի: Իսկ ա՞յժմ: Այժմ ավելի կարևորը տանջված ժողովուրդների ազատագրության հարցն է:

Տանջված ժողովուրդ... Որքա՜ն էր իր հայրը՝ վաստակավոր մանկավարժ Դմիտրին, արտասանում այդ խոսքերը: Եվ հիշողության կծիկը սկսեց բացվե՜լ-բացվե՜լ՝ իր հետ տանելով Գայի միտքը դեպի հեռու՜ անցյալը: Նա հիշեց Թավրիզը, իր ծուռումուռ, ցեխոտ փողոցներով, միահարկ կավածեփ տներով, որոնցից մեկում ծնվել ու իր մանկությունն էր անցկացրել ինքը: Հիշեց իր մանկական կռիվ-կռիվ խաղերը, որտեղ ինքը միշտ հրամանատար էր լինում:



— Ապրես, Հայկս,— ոգևորված ասում էր հայրը,— դու իսկական քաջ զորավար պիտի դառնաս ու պետք է փրկես մեր տանջված ժողովրդին:

Մտաբերեց նաև Էրզրումը, որտեղ ինքն էլ քաջ զորավար Անդրանիկի կողքին մարտնչում էր իր ժողովրդի ազատագրության համար, և հայրն էլ դարձել էր իր զինակիցը: Իսկ հետագայում, հանգամանքների բերումով՝ Սամարղանդում, որտեղ Գային դեռ Հայկ Բժշկյանց գիտեին, Բուխարայի էմիրի դեմ մարտնչելիս, հայրը գնում, կամավորական ջոկատներ էր հավաքագրում ու բերում հասցնում իր որդուն:

Գայի մտքի թելը այստեղ կտրվեց: Նա հիշեց, որ հոր նվիրական երազանքը մնացել է անկատար, իր ժողովուրդը դեռ ազատագրված չէ: Ու նա որոշեց դիմել Լենինին, որ իրեն ուղարկեն Կովկաս, հիմա էլ այնտեղ, իր ազգի ազատագրության համար մարտնչելու:

Այդ միտքը այնպես ոգևորեց նրան, որ մի պահ մոռացավ թե՛ հոգնածությունը և թե՛ վիրակապի գոյությունը: Մտքում նորանոր ծրագրեր մշակելով, նա գնաց մի քիչ հանգստանալու...

*ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆ*

# ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ ՉԱՊԱԵՎԻ ՄԱՍԻՆ

(Ծննդյան 80-ամյակի առթիվ)

*Այս պատմվածքները գրի են առնված այնպիսի մարդկանց շուրթերից, որոնք մոտիկից ճանաչում էին Չապաևին:*



## ԻՄ ՀԱՅՐԸ

*ԿԼԱՎԴԻԱ ԶԱՊԱԵՎԱ*

*Մենք ապրում էինք Պուգաչով կոչվող տափաստանային փոքրիկ քաղաքում: Հայրս ամբողջ ժամանակ լինում էր առաջավոր գծերում, որ մեր քաղաքից հեռու չէր, և նրան հազվադեպ էր հաջողվում տուն գալ: Մի անգամ, երբ նա եկավ, մենք դեռ քնած էինք: Մայրս բլիթներ եփելուց հետո, թասի մեջ մածուն լցրեց, որ հայրս շատ էր սիրում, և սկսեց արթնացնել մեզ: Մեր մեծ ընտանիքը նստեց սեղանի շուրջ: Հայրս, որ մի քանի րոպե առաջ ուրախ ծիծաղում էր, հանկարծ դեմքը խոժոռեց և, նեղացած այն բանից, որ մենք դեռ ոչինչ չարած նախաճաշելու ենք նստել, դիմեց մորս.*

*— Դու էլ ի՞նչ ես ուզում նրանց դարձնել, աղավնյակս: Աղանե՞ր: Փափկասուննե՞ր: Մենք փափկասուն բուրժույների դեմ ենք կռվում, իսկ իմ երեխաները պետք է փափկասուննե՞ր դառնան...*

*Հենց այդ առավոտ, դեռ սեղանից չհեռացած, նա պատվիրեց, թե ով ինչ գործ պիտի անի: Ալեքսանդրը, որ ամենից ավագն էր, ինքնաեռի համար կոճղ է մանրելու: Ես ու Օլիմպիադան հատակն ենք լվանալու: Իսկ փոքրիկ Վերան ու Արկադին փոշին են սրբելու:*

*Հայրս միշտ էլ մինչև կոկորդը թաղված էր գործի մեջ: Բայց հենց որ մի քանի ազատ րոպեներ էր ունենում, անցկացնում էր երեխաների հետ: Հայրս ամեն ինչում մեզ համար օրինակ էր: Չապաևը չէր ծխում, չէր խմում, ատում էր սուտը և տանել չէր կարող, երբ մարդկանց հետ կոպիտ էին վարվում: Նրա համար ամենալավ հանգիստը մեզ հետ զբաղվելն էր: Նա հատուկ ուշադրություն էր արժանացնում Օլիմպիադային ու Վերային: Նրանք Չապաևի հարազատ զավակները չէին: Նրանց հայրը իմպերիալիստական պատերազմի ժամանակ սպանվել էր Կարպատներում: Մեռնելուց առաջ նա ասել էր մեր հորը.*

*— Վասյա, ես մեռնում եմ... Երդվիր ինձ, որ զավակներիս որբ չես թողնի:*

*Եվ Չապաևը երդվել էր: Սկզբում նա զոհվածի այրուն օգնում էր փողով, իսկ հետո Օլիմպիադային ու Վերային բերեց մեր ընտանիք:*

*Չապաևը հրաշալի հյուսն էր: Մինչև օրս էլ իմ ծննդավայրում շատերի տանը պահպանվում է նրա պատրաստած կահույքը: Նա մեզ էլ էր հյուսնություն սովորեցնում:*

*Երեկոները մեր տանը միշտ թնդում էր ուրախությունից: Հայրս գալիս էր իր ընկերների հետ և զանազան խաղեր սկսում երեխաների հետ.*



ֆոկուսներ ցույց տալիս։ Հետո երգում էինք, պարում։ Չապաևը պարի մեջ բոլորին հաղթում էր։

Հայրս շատ էր ուզում, որ մենք փոքրուց բակրսներ սովորել։ Ես, օրինակ, դպրոց սկսեցի հաճախել, երբ դեռ յոթ տարեկան չկայի։ Բայց շուտով ուսուցչուհին նրան համոզեց, և նա ինձ հանեց դպրոցից։ Մի անգամ ռազմաճակատից տուն գալով, հայրս սկսեց ստուգել իմ գիտելիքները։ Ես տառերը չէի ճանաչում։ Նա ինձ նստեցրեց սեղանի մոտ և համբերատար կերպով սկսեց պարապել հետս։ Մենք սկզբում սովորեցինք տառերը, իսկ հետո սկսեցինք կարդալ։

Երբ եկավ մեկնելու ժամը, հայրս Ալեքսանդրին հանձնարարեց օգնել ինձ։

— Մյուս անգամ կգամ կստուգեմ,— նախազգուշացրեց նա Ալեքսանդրին և ձիով արշավեց դեպի դիրքերը։

Շատ չանցած՝ սպիտակները գրավեցին մեր քաղաքը։ Սկսվեցին կոտորածն ու սպանությունները։ Երկաթուղային բանվորներից մեկը մեր ընտանիքը թաքցրեց իրենց նկուղում։

Իմանալով Պուգաչով քաղաքին պատահած դժբախտությունը, Չապաևը օգնական ուժեր ուղարկեց։ Երեք օր մարտնչեցին կարմիրները։ Սպիտակները փախան։

Չապաևը տուն էր վերադարձել և սկսել փնտրել մեզ։ Ոչ ոք չգիտեր մեր տեղը։ Հայրս վախեցել էր, թե սպիտակները մեզ գերի տարած կլինեն։

... Մենք խաղում էինք բակում և հանկարծ նկատեցինք զույգ ձիեր լծված մի սայլակ։

— Քեռի Կո՜լյան,— բացականչեցինք մենք, վազելով դեպի մեզ ծանոթ զինվորը։

Նա շատ ուրախացավ, մեզ նստեցրեց սայլակը և տարավ տուն։

Տունը թալանել էին, թողածն էլ ջարդուփշուր արել։ Ողջ մնացած միակ աթոռին նստել էր հայրս և կարմիր խնձոր էր ուտում։ Մենք չորս կողմից վրա թափվեցինք և սկսեցինք ջերմ-ջերմ համբուրել։

Այնուհետև սկսեցինք զննել սենյակները։ Լուսամուտի գոգին հանկարծ գտանք ողջ մնացած մի այբբենարան։ Հայրս իսկույն իր մոտ կանչեց ինձ, նստեցրեց ծնկներին և, կարծես ո՛չ կռիվ էր եղել, ո՛չ գրոհ, հանգիստ ասաց.

— Դե ցույց տուր տեսնեմ, թե Ալեքսանդրը քեզ ինչպես է կարդալ սովորեցրել։

## ՊԵՏՅԱՆ

ՄԱՐԻԱ ՊՈՊՈՎԱ

Մի անգամ Չապաևի մոտ եկավ Պետյա անունով մի փոքր տղա։

— Իմ հայրը չապաևական էր,— ասաց նա։— Ուրալի տափաստաններում նրան սպանեցին սպիտակները։ Ես ուզում եմ վրեժ լուծել։

Չապաևը հրամայեց նոր զինվորին տալ ձի ու կազակական թամբ։ Բայց վատն այն էր, որ հրացանը շատ էր մեծ նրա համար, իսկ սուսերը քսվում էր գետնին։ Դրա համար էլ զինվորները Պետյա Շուլեպովի համար նոր սուսեր սարքեցին։ Չապաևը Պետյային նշանակեց հեծելազորային հետախույզ։

Երբ չապաևյան դիվիզիան նոր համալրում ստացավ, հետախույզների հրամանատար Զարիյակոն Պետյային հրամայեց ձին ու թամբը հանձնել նորեկ զինվորներից մեկին։ Պետյան հոնքերը կի-

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



տեց, մրթմրթաց բեղի տակ, բայց և այնպես իջավ թամբից:

Այդ ժամանակ մարտերը մղվում էին Ուֆայի մոտերքում: Այնպես պատահեց, որ հետախույզները կտրվեցին յուրայիններից: Մեզ վրա հարձակվեցին հակառակորդի գերազանց զինված ուժերը: Մենք հարյուր հիսուն հետախույզ էինք և ունեինք ընդամենը մեկ գնդացիր: Հազիվ էինք դիմադրում: Բայց ահա վիրավորվում է գնդացրորդը: Վիրավորվում է նաև երկրորդը, երրորդը... Այդ ժամանակ գնդացրի մոտ նստեցի ինքս, իսկ Պետյան այտը հրացանից չէր հեռացնում:

Սևաչյա այդ փոքրիկ տղան հետևում էր մեծերի բոլոր շարժումներին: Սպիտակները այնքան մոտեցան, որ մեզանից տասը քայլ էր բաժանում նրանց: Պտտվում էր գնդացիրը: Կրակում էր նաև Պետյան: Նա երկար նշան էր բռնում, խնայելով ամեն մի փամփուշտ:

Հանկարծ մեր հետևում լսվեց կարմիրբանակայինների հուժկու «ուռա»-ն: Մենք նայեցինք շուրջներս: Բլրակի հետևից նախ երևաց Չապաևի գլխարկը, ապա՝ արշավող հեծելազորը: Սպիտակները փախուստի դիմեցին:

Մեր հետախույզները քառատրոփ վազքով սլանում էին առաջ: Նրանցից մեկը Պետյային առավ իր ձիու վրա և երկուսով սլացան Չապաևի հետևից: Երբ մարտերը դադարեցին, Չապաևը իր մոտ կանչեց Պետյային:

— Ես տեսա, որ դուք երկուսով էիք մի նժույգի վրա: Որտե՞ղ է քո ձին, կազա՛կ,— կատակելով հարցրեց նա Պետյային:

— Իմ հրամանատարը ինձ կազակ չի համարում,— պատասխանեց Շուլեպովը: Ձիս խլեց ինձանից:

Չապաևը բարկացավ: Չաքիյակովին հրամայեց իսկույն վերադարձնել Պետյայի ձին ու թամբը:

*Թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԻ*

## ԶԻՆՎՈՐԻ ՍԻՐՏԸ

*ՀԱԿՈԲ ՄԱՆԹԱՇ*

Զինվորի սիրտը բռունցք է ծանր,
Հպարտ է, մեծ է զինվորի սիրտը.
Նա համբերության բաժակ է թանձր.
Պաշտպան կայան է զինվորի սիրտը:

Կարոտի ծով է սիրտը զինվորի,
Հայրենի գանձ է, փառք է սափորում.
Անհայտ ճամփա է սիրտը զինվորի.
Փոքրիկ աշխարհ է այս մեծ աշխարհում:




# ՎՐԱՍՏԱՆԻ



Չորս տասնամյակ առաջ ոչ ոք երազել անգամ չէր կարող, որ մեր փոքրիկ, գեղեցիկ և արևոտ Վրաստանը կդառնա առաջնակարգ ինդուստրիալ և զարգացած գյուղատնտեսական երկիր...

Աշխարհագրության հին ձեռնարկներում նույնիսկ ակնարկ չկա արտադրության, նրա առաջատար ճյուղերի մասին. էլ չենք խոսում խոշոր էլեկտրակայանների, մեծ ձեռնարկությունների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, գիտա-հետազոտական հիմնարկների, տեխնիկական արժեքավոր նոր կուլտուրաների և ուրիշ շատ բաների մասին:

«Գիորգիան (Վրաստանը) գեղեցիկ, բայց ծայրաստիճան աղքատ և հետամնաց երկիր է...» Այսպես է գրում գերմանացի ճանապարհորդ Ֆոն-Դենը հին Վրաստանի մասին:

46 տարի է, ինչ շքնաղ Վրաստանի վրա փողփողում է սովետական դրոշը: 46 տարին պատմության համար ժամանակի աննշան մի հատված է, որը, թվում է, չպետք է բավականացներ հետամնաց մի երկրի արմատական փոփոխության, աննախընթաց վերելքի համար: Սակայն հենց այդ կարճ ժամանակընթացքում էլ Վրաստանը

# ՔԱՐՏԵԶԻ ԱՌԱՋ

կատարեց հերոսական թռիչք. հետամնաց երկրից դարձավ առաջավոր հանրապետություն:

Բելգիային. Նիդեռլանդիային և Անգլիային հարկավոր եղավ 200 տարի. որպեսզի հասնեին տնտեսական բարձր զարգացման:

Չպետք է մոռանալ. որ այդ չորս ու կես տասնյակ տարիների մեջ են մտնում Հայրենական պատերազմի ծանր տարիները. երբ ամբողջ տնտեսությունը կոչված էր ծառայելու ռազմական նպատակներին և երկրի զարգացման հիմնական զարկերակները գրեթե կանգ էին առել...

Դժվար է թվել այն ամենը ինչ արվել ու արվում է Վրաստանում սովետական իշխանության տարիներին: Դրա համար հարկավոր են հատորներ: Այդ հատորները գրվել են ու գրվում են:

Անցած քառասունվեց տարիների ընթացքում հայտնագործվեցին բազմաթիվ հանքային բուժիչ ջրեր. էներգետիկայի աղբյուրներ. կառուցվեցին նորանոր հզոր էլեկտրակայաններ: Վրաստանի «սպիտակ ածուխի» պաշարները աշխարհում գրավում են առաջին տեղը: Հենց սա էլ վճռում է հանրապետության էներգետիկայի և ամբողջ ժողովրդական տնտեսության հսկայական աճը:

Այս ամենը կյանքի կոչեցին Ռուսթավիի մետաղաձուլական գործարանի կառուցման անհրաժեշտությունը. որը նպաստեց Վրաստանի և ամբողջ Անդրկովկասի մեքենաշինության բուռն զարգացմանը:

Հայտնի է. որ մեքենաշինությու՞ը երկրի տնտեսության հիմքն է: Դրա համար էլ Ռուսթավիի մետաղաձուլական գործարանի կառուցումից հետո կյանքի կոչվեց և բուռն թափով զարգացավ արտադրության բոլորովին մի նոր ճյուղ՝ մեքենաշինությունը:

Ինչե՞ր ասես. որ չեն արտադրում Վրաստանի մեքենաշինական գործարանները. ավտոմոբիլների և էլեկտրաքարշերի. նավերի և ծանրաքարշ տրակտորների. սննդի արտադրության սարքավորումներ. հաստոցներ ու գյուղատնտեսական մեքենաներ. հատուկ նշանակություն ունեցող զանազան գործիքներ ու սարքեր:

Վրաստանի մեքենաշինության բարձր զարգացման ցուցանիշներից մեկն էլ այն փաստն է. որ մեր մեքենաշինության արտադրանքը լրիվ չափերով բավարարում է ոչ միայն մեր և հարևան եղբայրական հանրապետությունների պահանջները, այլև արտահանվում է արտասահմանյան շատ երկրներ:

Մեքենաշինությունը խթանեց մեր հանրապետությունում սննդի և թեթև արդյունաբերության նոր ձեռնարկությունների ստեղծմանը. նպաստեց գյուղատնտեսության մեխանիզացիայի վերելքին:

Ամբողջ աշխարհին է հայտնի Վրաստանի արտադրանքը. բարձրորակ գինին և կոնյակը. շամպայնը բուրումնալից թեյն ու ծխախոտը, մրգերի պահածոներն ու հանքային ջրերը. եթերայուղերն ու օծանելիքները:

Ահա թե ինչ տվեց սովետական իշխանությունը վրաց աշխատավոր ժողովրդին:

Անսասան է մեր ժողովրդի հավատարմությունը. անկոտրում է նրա կամքը և անսպառ նրա եռանդը:

46 տարի է. ինչ վրաց ժողովրդին ջերմացնում և լուսավորում է Սովետական Միության հուրհրան արևը:

Գ. ԶԱՐԴԱԼԻՇՎԻԼԻ

*Աշխարհագրական գիտությունների դոկտոր*

* * *

*Սովետական Միության առաջին և միակ գործարանը, որը թողարկում է տունգային օծանելիք, գտնվում է Օչխամուրում (Քոբուլեթիի մոտ): Այդ օծանելիքից պատրաստած լաքը երկար ժամանակ պահպանում է ներկված առարկաների փայլն ու գեղեցկությունը: Տունգի օծանելիքի վրա չի ներգործում թթու կամ աղի ջուրը: Այն չի անցկացնում ո՛չ օդ, ո՛չ էլեկտրական հոսանք: Այդ պատճառով էլ առանձնապես մեծ է նրա դերը ավիացիայում և ավտոմոբիլային արդյունաբերության մեջ:*



*Թբիլիսիի Կ. Մարքսի անվան գրադարանը Սովետական Միության խոշորագույն գրադարաններից մեկն է, որն ունի ավելի քան 8 միլիոն գիրք:*

# ՎՐԱՍՏԱՆԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Նոր հնգամյակը մեծ հեռանկարներ է բացում մեր հզոր հայրենիքի բոլոր հանրապետությունների տնտեսական վերելքի համար։

Բայց ինչպիսի՞ն են նոր հնգամյակի կոնկրետ խնդիրները, որոնք պետք է իրականացվեն Վրաստանի աշխատավորների կողմից։



Թբիլիսիի մուտքերից մեկը զարդարում է 300 արագվացիների պատվին կանգնեցրած այս հուշարձանը

Հնգամյա պլանով նախատեսվում է ժողովրդական տնտեսության զարգացման այնպիսի տեմպ, որը լրիվ ապահովում է երկրի բնական հարստությունների և ազգային եկամտի աճը։ Մեր մեծ հնարավորությունների շարքում ամենից առաջ պետք է նշել Վրաստանի հիդրոէներգետիկայի անսպառ պաշարները։

Դեռ 1921 թվին Վ. Ի. Լենինը Կովկասի կոմունիստների ուշադրությունն էր հրավիրում մեր բնական հարստությունների առատության վրա և պահանջում էր, որպեսզի ամեն տեսակի հնարավորություններ գործադրվեն «սպիտակ ածուխի» պաշարները օգտագործելու ուղղությամբ։

Վրաստանի ջրառատ գետերը՝ Ինգուրը, Ցխենիս-Ծղալին, Կոդորը, Բզիփը, Ռիոնը, Քուռը, Ալազանը և մյուսները առանձնահատուկ պայմաններ են ստեղծում մեծ էֆեկտիվությամբ հիդրոէլեկտրակայաններ կառուցելու գործում։

Հիշատակենք թեկուզ Լաջանուրի հիդրոէլեկտրակայանը, որի կասկադների բարձրությունը 70 մետր է, իսկ Ինգուրի հիդրոէլեկտրակայանի կասկադների բարձրությունը մոտավորապես լինելու է 270 մետր։ Ռիոնի վրա կկառուցվի երկու հիդրոկայան։ Կշարունակվի աշխատանքը Թբիլիսիի էլեկտրակենտրոնի ընդլայնման ուղղությամբ, որի ուժը կհասնի 960 հազար կիլովատի։ Այս էլեկտրակայանը կաշխատի բնական գազով։ Այս բոլորից հետո նախապայմաններ կընձեռնվեն 1970 թվականին հանրապետությունում ստեղծելու 11 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, 6 միլիարդի փոխարեն։

Միանգամայն հասկանալի է, որ այսպիսի էլեկտրաէներգիայի քանակը անհրաժեշտ պայմաններ կստեղծի էլ ավելի հզորանալու էլեկտրամետալուրգիայի, էլեկտրաքիմիայի, մեխանիզացիայի և ավտոմատիկայի դերը բազմաճյուղ արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառներում։

* * *

Հին Վրաստանում թեյի թուփը հատուկենտ տերևներով փոքր բույս էր և քիչ տարածված։ 1915 թ. Վրաստանում հավաքվել է ընդամենը 542 տոննա թեյի կանաչ տերև, իսկ 1959 թվականին՝ 140 հազար տոննա։ Յոթնամյակի վերջում թեյի կանաչ տերևի բերքը հասավ առասպելական չափի՝ 200 միլիոն կիլոգրամի։



Այսպիսով, Վրաստանը աշխարհում թեյ արտադրող երկրների շարքում Ցեյլոնից, Հնդկաստանից և Չինաստանից հետո, գրավում է չորրորդ տեղը։

Վրաստանի թեյը հռչակված է ամբողջ աշխարհում, այն բավարարում է Սովետական Միության բազմամիլիոն բնակչության պահանջները։

Երկրորդ խնդիրը, որը նույնպես մեծ նշանակություն կունենա Վրաստանի առաջատար ուժերի զարգացման համար, դա սև և գունավոր մետաղների օգտագործման հնարավորությունն է քիմիական արտադրանքի և մեքենաշինության մեջ։

Վրաստանում կիրականանա ամբողջ աշխարհին հայտնի Ջիաթուրայի մարգանեցի լայն օգտագործման հնարավորությունները։ Հնգամյակում կըկրկնապատկվի հանքային պարտանյութերի արտադրանքը, որը վճռական դեր կխաղա Վրաստանի համար կուլտուրաների մշակման ասպարեզում։ Կրկնակի կմեծանա բեռնատար ավտոմեքենաների թողարկումը։

Կկառուցվի հաշվիչ մեքենաների գործարան։ Նոր տիպի մեքենաների և ագրեգատների մասսայական օգտագործման ասպարեզում մեզ կօգնեն գիտահետազոտական և կոնստրուկտորական կազմակերպությունները, որոնք արդեն ստեղծել են այնպիսի մեքենաներ, ինչպիսիք են «Սաքարթվելո» («Վրաստան») կոչվող թեյի տերև հավաքող մեքենան, ծխախոտ չորացնելու ագրեգատը և մի շարք արժեքավոր սարքավորումներ։

Մեծ հեռանկարներ են առաջադրված մեր երկրի գյուղատնտեսության ասպարեզում. կրկնապատկել անասնապահական, թռչնաբուծական և գյուղատնտեսական մթերքների քանակը, որպեսզի է՛լ ավելի



Բարաթաշվիլու անվան նորակառույց երկհարկանի կամուրջը Թբիլիսիում

բարձր հիմքերի վրա դրվեն մեր ժողովրդի նյութական պահանջները։

Այստեղ վճռական նշանակություն ունեն ոռոգման սիստեմների ծրագրերի իրականացման հեռանկարները։ Նկատի է առնըված վերին Ալազանի ոռոգման սիստեմի շինարարությունը և Կոլխիդայի ճահճուտների վերացման աշխատանքները։ Այս ամբողջ կոմպլեքսի ավարտումից հետո հիշյալ վայրերը կըվերածվեն թեյի, պտղատու ծառերի, ցիտրուսային և այլ կուլտուրաների կայուն բազաների։

Հանրապետության տարբեր վայրերում կան 35 տուրիստական բազաներ. սակայն ընթացիկ հնգամյակում պետք է իրականանա տուրիստական բազաների շինարարության մեծ



1913 թվականին Վրաստանում արտադրվել է ընդամենը 70 հազար տոննա քարածուխ։ Այժմ քարածուխի օրական արտադրությունը կազմում է ավելի քան 12 հազար տոննա։ Դա նշանակում է, որ յուրաքանչյուր 1 շաբաթում Վրաստանում արտադրվում է այնքան քարածուխ, որքան արտադրում էր նախկին Վրաստանը մեկ տարում։

Միայն անցած տարվա քարածուխի հանույթը, եթե հնարավոր լիներ կուտակել մի տեղ, ապա այն 1,5 անգամ ավելի մեծ կլիներ քան հռչակավոր Քեոփսի բուրգը։

* * *

Վրաստանում սովետական իշխանության տարիներին հսկայական չափերով զարգացավ բամբակեղենի, բրդի և մետաքսի արտադրությունը։ Յոթնամյակի վերջում արտադրվեց 108 միլիոն մետր գործվածքեղեն։ Այս երկարությունը 2,5 անգամ գերազանցում է հասարակածի երկարությանը։

Վրաստանում յուրաքանչյուր բնակչին այժմ ընկնում է 21 մետր բարձրորակ գործվածք։ Մինչդեռ, 1915 թվականին Վրաստանի գյուղացին հազիվ էր հայթայթում երկու մետր կտավ...

ծրագիրը: Կկառուցվեն նոր դպրոցներ, հիվանդանոցներ, առողջարաններ, հանգստի տներ, հյուրանոցներ, սպորտային բազաներ, խանութներ, ճաշարաններ, հանգստի ու ժամանցի վայրեր, կբարեկարգվեն օդային ու ջրային նոր մագիստրալները, օդանավակայանները:

Հանրապետության քաղաքներում շահագործման կհանձնվի ավելի քան 5 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն:

Ահա համառոտակի այն հեռանկարները, որոնք կյանքի պետք է կոչվեն նոր հնգամյակում:

ԻՐԱԿԼԻ ՄԻԽԵԼԱՁԵ
Պրոֆեսոր, Վրաստանի պետական պլանային հանձնաժողովի նախագահի տեղակալ



Գեղեցիկ է Թբիլիսիի մետրոն: Արագընթաց գնացքները ստորգետնյա ուղիներով բազմաթիվ ուղևորներ են փոխադրում քաղաքի մի ծայրից մյուսը: Թբիլիսցի այս երիտասարդներին այնքան է ուրախացրել մետրոն, որ նրանք լուսանկարվել են «Հոկտեմբերյան» կայարանի մուտքի մոտ:

# ԱՄԵՆԱԳԵՂԵՑԻԿ ՀԵՔԻԱԹԸ

ԳԵՈՐԳԻ ՍԱՆԴՈՒՐԱՁԵ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Ամեն ինչ մնաց բլրակի հետևում. և՛ փարոսը, և՛ ռուկանը, որ կախված էր բակում, և՛ նեղլիկ փողոցները, և՛ տները: Երկինքը գորշավուն էր: Անձրև էր մաղում: Ցեխածածկ ճանապարհի վրա անիվները սղղում էին: Հայրը բարկանում էր՝ իր խոշոր, մկանոտ ձեռքերի մեջ ավելի սեղմելով ղեկը: Մթնում էր, բայց անձրևը այդպես էլ չէր դադարում: Լապտերների լույսի տակ երբեմն արծաթին էին տալիս ծառերը: Տղան նստած էր լուռ: Հայրը թեքվեց նրա կողմը և ուսի վրայով դիմեց.

— Բաճկոնիս գրպանում սիգարեթներ կան...

Տղան շոշափեց գրպանները և գլուխն օրորեց. «ոչինչ չի մնացել»:

— Սատանան տանի, — մտածեց հայրը, — դարձել եմ մոռացկոտ: Ախր քիչ առաջ շպրտեցի դատարկ տուփը: Ստիպված պիտի լինեմ մինչև ավանը սպասել: Այնտեղ մի լավ սրճարան կա, տաք է...

Նա արդեն սկսել էր ափսոսալ, որ այդպիսի հեռավոր ու դժվար ուղերթում տղային վերցրել է հետը: Հոր մեծ բաճկոնի մեջ փաթաթված Գոչան հպվել էր ապակուն, նայում էր ճանապարհին:

«Երևի երազում է, — մտածեց Վանոն: — Դե, իհա՜րկե, երազանքի հասակ է: Ուրիշ ի՞նչ է մնում անել, երբ ճանապարհն ու մութը կարծես անհատնում լինեն...»

Տղան հազաց:

— Պետք չէր ապակին բացել, — ասաց հայրը, — ա՛յ, տեսնու՞մ ես, նորից հազում ես: Գուցե և դողացնում...

Հայրն ուղղեց ղեկն ու միացրեց լրացուցիչ լապտերները: Մի քանի տասնյակ մետրի վրա ոչինչ չէր երևում: Բավական տեղ երկուսն էլ լուռ էին:

— Երբ ես փոքր էի, — ասաց հայրը, — իմ տատիկն ինձ հեքիաթներ էր պատմում: Այն տարի շատ ձյուն եկավ: Ձյունը ծածկեց տները, փողոցները, և մայրս վախենում էր ինձ մենակ թողնել: Նստեցնում էր ծնկներին, հեքիաթներ պատմում: Շատ հեքիաթներ եմ լսել: Բայց առանձնապես մեկն եմ լավ հիշում: Գեղեցի՜կ հեքիաթ է...

— Պատմիր, հայրիկ...

— Ի՞նչը, հեքիա՞թը...

— Այո, գեղեցիկ հեքիաթը:

Տղան նորից հազաց:

«Լավ հեքիաթ կլինի, եթե մրսած լինես», — մտածեց Վանոն: Հետո բարձրացրեց որդու օձիքը, շոյեց նրա այտը: Երեխան տաք էր: Անցան կամուրջը: Առջևում՝ ճանապարհի մեջ, երևաց հաղթանդամ մի մարդ: Անծանոթը բարձրացրեց ձեռքը: Լապտերների լույսի տակ հագին էր նշմար-

վում դեմքը, բաց դարչնագույն թիկնոցն ու կոշիկները երևում էին որոշակի։ Հայրը իջեցրեց ապակին։

— Ո՞ւր, — հարցրեց նա։

Անծանոթը տվեց գյուղի անունը։

— Տա՛ր, — թախանձեց նա, — շատ եմ խնդրում, հասցրո՛ւ։ Երեխաս հիվանդ է։ Կուշանամ։ Միայն թե... փող չկա մոտս...

Հայրը նայեց որդուն. «չի՞ լսում արդյոք»։ Ապա կիսաձայն ասաց.

— Տեսնում ես, Լյի՛, թե ինչ եղանակ է։ Ասենք՝ անվադողերս էլ կարգին չեն...

— Ես ի՞նչ անեմ, — հուզվեց անծանոթը։

Վանոն հոգոց քաշեց.

— Ոչնչով չեմ կարող օգնել։ Շտապում եմ։ Ճանապարհս էլ ուրիշ ուղղությամբ է։ Թե չէ՝ մեծ հաճույքով։

Անծանոթը շարունակում էր խցիկի մոտ կանգնած մնալ։

— Լսո՞ւմ ես, այս գիշեր ես անպայման պիտի տանը լինեմ։ Զանգահարել են, երեխաս ծանր է։

Վանոն թոթվեց ուսերը։

Երբ անծանոթը ետ մնաց, հայրը զգաց որդու հայացքը։

— Ինչու՞ չվերցրիր, — հարցրեց տղան։

— Նրա՞ն...

— Այո։ Ախր երեխան հիվանդ էր։

— Ո՞վ գիտե՝ երեխա ունի, թե չէ։ Ճանաչում եմ ես դրանց. խեղճ են ձևանում, կարծելով, թե ձրի կգնան...

— Չէր երևում, թե նա այդպիսիներից է։ Եվ մենք վատ արեցինք, որ չվերցրինք։ Չէ՞ որ մեքենայում տեղ կա։ Առավոտյան վեց հոգով էինք նստած։

Հայրը խոժոռեց հոնքերը։

— Լավ, — ասաց նա, — գուցե ե՞ս դատենք...

Տղան լուռ էր։ Անձրևն ուժեղացավ։

«Հիմարություն արի, որ սրան հետս վերցրի, — մտածեց Վանոն։ — Այս թզուկի հետ մարդ վախենում է մի երկու կոպեկ աշխատել։ Էլ երբեք սրան չեմ վերցնի»։

Մեքենան հին էր, չորստեղանի։ Բայց Վանոն պարծենում էր իր «պառավով»։ Պատերազմից հետո սկսեց աշխատել նավահանգստում, այն ժամանակ էլ գնեց։ Սկզբում, երբ պատահական ուղևորները փող էին առաջարկում, զարմանում էր։ Հետո սովորեց։ Վերջիվերջո մեքենան հո իրենն է։ Բենզինն էլ ձրի չեն տալիս։ Եվ ապա՝ մյուս ծախսերն էլ քիչ չեն։ Աշխատանքից հետո մինչև ուշ գիշեր շրջում էր քաղաքում։ Առանձնապես հաջողակ էր, անձրևոտ օրերին անձրևը բոլորին տուն է քշում։

Դոչյան, իհարկե, ոչինչ չգիտեր հոր «փախփախի» մասին, բայց այսօ՞ր...

— Խաչապուրի կեր։

— Շնորհակալ եմ, հայրիկ, չեմ ուզում։

— Դե ինձ համար կտրիր...

Դոչյան բացեց կապոցը, կտրեց խաչապուրին ու մեծ կտորը տվեց հորը։

— Համով է, — ասաց Վանոն։ — Մայրդ միշտ այսպես համեղ է պատրաստում։

— Այս ճամփով հաճա՞խ են մեքենաներ երթևեկում, — հարցրեց Դոչյան։

— Երբեմն։ Իսկ ինչու՞ ես հարցնում...

— Ախր այն մարդը անձրևի տակ մնաց, է՜...

— Ժամը տասնմեկին ավտոբուսը կանցնի, — երեխային հանգստացնելու համար ասաց գլուխն եկած առաջին միտքը։ — Հենց դրա համար էլ չվերցրի...

Տղան շեշտակի շրջվեց։

— Ճշմարի՞տ։

— Իհա՛րկե, տղաս։

— Այդ լավ է։ Բայց ավտոբուսը նրան կհասցնի՞ տուն։

— Կհասցնի, — հայրը նորից ճիշտ չասաց։ Հետո երկար ժամանակ՝ մինչև լուսավոր փողոցը հասնելը, նրանք ոչ մի խոսք չփոխանակեցին։



Փողոցը վերջանում էր ծովափին, ուր մի փոքրիկ սրճարան կար։

— Այստեղ կհանգստանանք, — ասաց Վանոն։

Սրճարանը թեև դատարկ էր, բայց՝ տաք։ Հայրը

Գոչային սեղանի մոտ թողնելով, ինքը գնաց հյուրանոց։

— Տեղ չկա, — ասաց վերադառնալուց հետո։ — Բախտներս չբանեց։ Գնալն էլ վտանգավոր է։

Տղան նորից հազաց։

— Մրսե՞լ ես, — կարեկցանքով հարցրեց բուֆետի աշխատակցուհին։ Հիմա ես քեզ կաթով թեյ կտամ։ Գիշերն այստե՞ղ եք մնալու։ Ո՞չ։ Դա վատ է, որ հյուրանոցում տեղ չեք գտել։ Բայց, ոչինչ, դժբախտություն չէ։ Տեղավորվեցեք իմ տանը, իսկ ես կգիշերեմ հարևանուհուս մոտ։ Ես էլ երեխաներ ունեմ։ Հասկանում եմ։ Գնալու մասին չմտածեք անգամ։ Երեխայի կուրծքը կշփեմ, թող հանգստանա։ Տղան մրսել է։

Վանոն կնոջը մի կողմ տարավ և ինչ-որ բան փսփսաց ականջին։

— Հապա, պահեցեք այդ փողը, — վճռականորեն ասաց կինը, — և ո՜նց չեք ամաչում։ Տեսնում եմ՝ հեռու տեղից եք գալիս, տղան հազում է... Եթե որևէ բան պետք գա, չքաշվեք, ես այստեղ՝ կողքի սենյակում կլինեմ։

Մի փոքրիկ դուռ էր միացնում բուֆետը սենյակին։ Սենյակը նեղլիկ էր, բայց հարմարավետ։ Գոչան տեղավորվեց օթոցին։

— Անծրև է, — ասաց նա։ — Ինչ կպատահի նրան, եթե ավտոբուսը չգա...

— Քնի՛ր, — ասաց Վանոն, — ավտոբուսն անպայման կգա։

— Իսկ եթե չգա՞...

— Այն ժամանակ... այն ժամանակ ես ինքս կգնամ նրա հետևից...

Տղան նստեց, ժպտաց։

— Դե, ինա՛րկե, հայրի՛կ։ Բայց ես չեմ քնի։ Ես կսպասեմ։ Դու անպայման պիտի հեքիաթ պատմես։

Վանոն ծածկեց կեպին։ Նստելով ղեկի մոտ, նա հիշեց այն հեքիաթը։ Դա մի գեղեցիկ հեքիաթ էր լավ մարդկանց մասին, որոնք երբեք մարդուն դժբախտության մեջ չեն թողնում։

Վրացերենից թարգմ. Բ. ՍԵՅՐԱՆՅԱՆԸ

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՎՐԱՑ ԵՐԵԽԱՆԵՐԸ

ՄԱՅՐ ԵՂՆԻԿԸ.

ԱՐՉԻԼ ՋԱՓԱՐԻՁԵ
Թբիլիսի, № 47 դպր., 9-րդ դաս.

ՄՐՆԳԱՉԱՐԸ
Գ. ԽՈՄԵՐԻՁԵ
Թբիլիսի, № 1 դպր., 8-րդ դաս.

ՁԻ
ՓԱՌՆԱՈՍ ՋԱՓԱՐԻՁԵ
Թբիլիսի, № 62 դպր., 7-րդ դաս.



# ՀԱՅՐԵՆԻ ԱՆՏԱՌ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ



Նկ. ԷԴՎԱՐԴ ԱՐԱՋՅԱՆԻ

Իջել է մի անմեղ դադար
Ձորերին ու ճամփին սարի,
Ինչ լա՜վն է, հայրենի անտառ,
Քո ծմռան հրաշքը վայրի։
Ծառերդ ծածկվել են ձյունով,
Կարծես թե բամբակ են բարձել,
Գետակը իր երկար հունով
Սառել է, մի կամուրջ դարձել։
Այս բլրի ձյունածեղ ուսին
Ոտքերով այս ի՞նչ են արել,
Ասես թե գիշերվա կեսին
Շլդիկն է տրնգի պարել։
Չի սառչում աղբյուրդ թոթով
Ձմռան ու ձյուների խորքում,
Լցված քո մայրական կաթով
Քո գարնան կարոտն է երգում։
Ոսկեղեն ամպի մի պատառ
Կախվել է կատարին սարի,
Ինչ լա՜վն ես, հայրենի անտառ,
Քո ծմռան հրաշքով վայրի։





Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Արտակ-Գևորգը քայլում էր, ուրախ աչքով ա-նում վարագույրների ճեղքում թաքնված աղջիկ-ներին, որոնք անմիջապես անհետանում էին։ Բայց, փառք աստծու, ահա դիմացից գալիս են երկու ձագի։ Թարամթյանը նայիր, դրանք էլ ոնց որ զին-վորներ լինեն։ Իհարկե, զինվորներ են, հրացան-ները ուսերին, ծանր սապոգներով ծեծում են սա-լահատակը։ Համա թե քայլվա՞ծք է... Երևի, այ էլպես էլ բաց կավող են։ Գանո՞, որանք ոնց որ ինձ վրա են գալիս... Հա, էլի... Ի՞նչ անեմ... Ես դառ-նամ ու փախչե՞մ։ Հիմարություն։ Այդ կնշանակեր՝ ես մեղավոր եմ, թանեք ինձ։ Ճիշտ է, իրենց այդ ծանր սապոգներով նրանք հազիվ թե կարողանան հասնեն ինձ, բայց և այնպես... Ավելի լավ է շա-րունակեմ ճամփաս, իբր թե ոչինչ չի պատահել։ Եվ իսկապես, ի՞նչ մեղք եմ գործել։ Մի փոքրիկ կատակ քեղավոր ոստիկանի հետ, ուրիշ ոչինչ։ Դրա համար արժե՞ մարդուն գլխիվայր կամ, որ ավե-լի վատ է, գլխիվեր կախել... Իհարկե, ոչ, իհարկե, Թոքիլ թագավորը բարի է, մարդասեր և թույլ չի տա կախել մի տղայի, որի մեղքը միայն այն է, որ սուլելով քայլում է Թոլիքի ամայի փողոցնե-

---

Սկիզբը՝ «Պիոներ» 1966 թ. № № 9–12, 1967 թ. № 1։

րով ու մեկ-մեկ աչքով անում փարագույրների հետևից ծիկրակող սիրունիկ աղջիկներին։ Ասա՞ք, կեցցե՛ Թոբիլ արդարամիտ թագավորը, կեցցե՛ նրա փառապանծ գվարդիան և արթուն ոստիկանությունը... Ես, Արտակ-Պեպենս ազատ քայլում եմ Թոբիլի սալարկած փողոցներով, և ոչ ոք ինձ չի ասում, թե աչքիդ վերևը հոնք կա։ Ազատությո՜ւն...

— Կանգ ա՛ռ։

Արտակ-Պեպենը նայեց աջ ու ձախ։ Զինվորները սաղավարտների տակից խոժոռ հայացքով նայում էին նրան։

— Դուք այդ ի՞նձ հետ եք, պարոն զինվորներ։

— Ո՞վ ես, — միաժամանակ բղավեցին երկու զինվորները։

— Ձեր թույլտվությամբ, ես Արտակ-Պեպենն եմ, օտարերկրյա զբոսաշրջիկ, որը հենց նոր է ժամանել Թոբիլստան։

Ի՞նչ ես անում։

— Այս րոպեին ես ոչինչ չեմ անում, այսինքն, պատասխանում եմ ձեր հարցերին։ Իսկ քիչ առաջ շրջում էի ձեր մայրաքաղաքում և հիանում նրա փողոցների ամայությամբ։ Ա՜խ, պարոնայք, ես շատ եմ սիրում ամայի փողոցներ...

— Դու, տղա, օրինազանցություններդ թո՛ղ։

— Լավ, որ ասում եք, կթողնեմ... Ինչու՞ չթողնեմ որ...

— Իսկ հիմա առա՛ջ անցիր։

— Անցնեմ... Այսինքն, ո՞ւր։

— Անցի՛ր, անցի՛ր։ Տեղում կիմանաս։

— Տեղու՞մ։ Դե, ինչ կա որ, տեղում է՝ թող տեղում լինի։

Եվ Արտակ Պեպենը անցավ առաջ։

Բավական տեղ լուռ էին, լսվում էր միայն կոշիկների դոփյունը փայլուն սալարկին՝ գը՛ռթ-գը՛ռթ, գը՛ռթ-գը՛ռթ... Առջևում փողոցը կտրուկ կերպով թեքվում էր աջ, և Արտակը որոշեց օգտվել դրանից։ Նա կռացավ իբր կոշիկի թելն ամրացնելու։ Զինվորները կասկածանքով թեքվեցին ստուգելու, և հենց այդ պահին Արտակ-Պեպենը, ոստնելով տեղից, թափով հրեց նրանց աջ ու ձախ և նետվեց առաջ։ Զինվորները եռ-եռ գնացին ողորկ սալարկի վրա ու ցած փռվեցին։

— Մնաք բարո՜վ, պարոն զինվորներ, — ձեռքն օդում թափահարելով, բղավեց Արտակն ու ծածկվեց ոլորանի հետևում։

Նա վազում էր թեթևությամբ, համոզված, որ իրեն չեն հասնի։ Բայց հանկարծ առջևում էլ երկու զինվոր երևացին։ Վայրկենապես որոշում ըն-



դունեց և, առանց վազքը դանդաղեցնելու, նետվեց նրանց ընդառաջ։

— Այնտեղ ձերոնք կռվի՜ են բռնվել չորս հոգու հետ, — դեռևս հեռվից բղավեց նա։

— Որտե՞ղ։

— Ոլորանի հետևում։ Շուտ հասեք, թե չէ ուշ կլինի...

Լսվեց հեռացող կոշիկների դոփյուն, որը սակայն շուտով կանգ առավ մեկեն։ Արտակը գլխի ընկավ, որ մյուս երկուսը հասկացրին սրանց, թե բանն ինչ է։ Հապաղել չէր կարելի։ Նա թեքվեց դեպի պատահած առաջին նրբանցքը, անցավ մի հարյուր քայլ ու դեմ առավ խուլ պատի. դա փակուղի էր։ Ետ դառնալ չէր կարելի. երևի զինվորներն արդեն անկյունում են։ Հրեց մոտիկ դուռը. փակ էր։ Այդպես էլ գիտեր։ Մի՞թե ոչ մի ելք չկա։ Սատանան տանի, չի կարող ելք չլինել... Ահա, զինվորները երևացին։ Նրանք տեսան նրան ու հաղթական աղաղակով նետվեցին առաջ։ Արտակը փաթաթվեց ջրհորդանին ու սկսեց կատվի պես վեր մագլցել։

Ցած իջիր, կկրակենք,— գոռաց զինվորներից մեկը։

Բայց նա արդեն կառչել էր բիվից և շուտով տեսողությունից անհետացավ։ Կղմինդրների վրայով քայլելը, իհարկե, շատ հարմար է, բայց ընդամենը մինչև կտուրի ծայրը... Իսկ հետո՞։ Սանդուղքով վեր են բարձրանում։ Արտակը նայեց ցած. զինվորներից մեկն արդեն սանդուղքը կես էր անցել։ Նրա սաղավարտը պսպղում էր վերջալույսի շողերից և խիստ հարմար թիրախ էր։ Մի ծանր կղմինդր ցած թռավ և, թրա՛խկ, ուղիղ պսպղուն սաղավարտին։ Զինվորն աղաղակով ցած գլորվեց. ներքևում անասելի աղմուկ բարձրացավ։ Թնդաց մի կրակոց, և տանիքի շուրթի՝ կղմինդրները օդ թռան։ Արտակ-Պեպենը ցատկեց մյուս տանիքը, սողաց ցած և սկսեց ջրհորդանով արագ-արագ իջնել։ Ոտքերը մայթին դնելուն պես հետևից լսեց.

Ձեռքերդ վե՛ր։

Ակնթարթորեն շուռ եկավ և, բռունցքի մի ուժգին հարված հասցնելով զինվորի կրծքին, սկսեց փախչել։ Հենց այդ րոպեին դեմից երևաց զինվորների մի ամբողջ ջոկատ, և Արտակը հանգիստ կանգ առավ տեղում։ Փախչելն այլևս իզուր էր։ Երբ ջոկատը մոտեցավ, նա ուրախ դիմեց հրամանատարին։

— Ողջույն, լեյտենանտ։ Ու՞ր եք գնում։

— Այնտեղ, որտեղից այլևս դուրս չեն գալիս։

— Այդպես էլ գիտեի։ Գնանք, պարոն լեյտենանտ, որովհետև ես շատ եմ ուզում տեսնել այդ տեղը։

— Զգույշ, որ տեսնելուց հետո տակդ չթրջես,— մռայլ կատակեց լեյտենանտը։ Զինվորները հռհռացին։

Շուտով Արտակը համոզվեց, որ մարդուն բանտ նետելու հարցում Թոքիլատանում ավելորդ քաշքըշուկ չեն սիրում, որն այնքան անխուսափելի է, երբ պետք է նրան բանտից ազատել։ Արտակին համարյա կոմիկական արագությամբ հարցաքննեցին և, մեղավոր ճանաչելով հանցավոր նպատակներով պետական սահմանը խախտելու մեջ, նետեցին քաղաքային բանտի 3-րդ բաժինը, որտեղ պահվում էին հույժ վտանգավոր հանցագործները։ Բայց նրան ուղղակի չառաջնորդեցին 3-րդ բաժինը, այլ, այսպես ասած, աստիճանաբար հասցրին այնտեղ։ Այդ արվում էր, ինչպես սիրալիր կերպով բացատրեց բանտային վերակացուն, որպեսզի նորեկ ոճրագործը առարկայական-ցուցադրական ձևով տեսներ հանցանքի ու պատժի հարաբերակցությունը և համապատասխան հետևություններ աներ՝ հանդերձյալ կյանք բռնելուց առաջ։ Ընկնելով առաջին բաժինը երեկոյան ժամը 4-ի մոտերքը, նա միայն գիշերվա 12-ին հասավ 3-րդ բաժինը, այդպիսով ամեն մի բաժնում մնալով մոտ չորս ժամ։ Ինչպիսի՜ մարդիկ ասես, որ չկային այդտեղ՝ բանաստեղծներ ու խելառներ, փիլիսոփաներ ու հանաքչիներ, շախմատիստներ ու երգիչներ, պրոֆեսորներ ու մաքուր դմբոններ, ծանր ատլետներ ու թեթև վազքի սերեր, երազողներ ու զգաստ պրոզայիկներ, մարգարեներ ու հանճարներ, սարկամիտներ ու ազատասերներ. ամբողջ մի հասարակություն, որն ապրում էր ծիծաղելով ու մեռնում առանց ետ նայելու։

— Ողջույն ուրախ բանտարկյալներին,— բացականչեց Արտակ-Պեպենը հերթական 3-րդ բաժինը մտնելիս։ Եվ իսկույն ընկավ մի փիլիսոփա-բան-



տարկյալի ճանկը, որը կարծես հենց նրա գալուն էր սպասում։

— Ա՛յս կողմը արի, մանուկ, որ նոր պիտի ըսկսես ապրել։ Նստիր ու ականջ դիր իմ խոսքերին։ Դու նոր ես բանտ եկել, ուրեմն դեռ հիմար ես։ Մի՛ առարկիր, հիմար ես։ Այ, երբ մի հինգ տարի նստես, նոր կսկսես բան-ման հասկանալ։ Իսկ հիմա լսիր իմ ծրի դատախոսությունը և ականջիդ օղ արա։ Ի՞նչ տարբերություն կա բանտարկյալի և ոչ-բանտարկյալի միջև... Ըստ էության՝ ոչ մի տարբերություն։ Մի՛ առարկիր։ Նախ ականջ արա։ Ուրեմն, ոչ մի տարբերություն։ Բանտարկյալը մի օր կդառնա ոչ-բանտարկյալ, ոչ-բանտարկյալը՝ բանտարկյալ։ Խնդիրը միայն ժամանակի մեջ է, որից ոչինչ, գլխի՞ ես...

Արտակ-Պուպենը մինչև վերջ լսեց այդ տարօրինակ դատախոսությունը, նա քնեց անխռով քնով, առանց իմանալու, որ առավոտյան իրեն սպասում է կախաղանի օղը։

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

Լույսը բացվեց մունետիկների աղաղակներով։

«Թոլիքի քաղաքացիներ. այսօր ժամը տասնմեկին քաղաքային հրապարակում կախաղան կհանվեն երկու ավազակներ, մեկը՝ դրսից, մյուսը՝ ներսից։ Այդ ավազակները մտքներին դրել էին սպանել մեր Թոբիլ Առաջինին, որն այսքան տարի իմաստությամբ կառավարում է Թոբիլստան երկիրը։ Ոճրագործները տեղնուտեղը բռնվեցին ու հիմի պետք է արժանի պատիժ ստանան՝ հուրախություն մեր ժողովրդի և ի սարսափ բոլոր ավազակների, որոնք դեռ թաքնվում են մութ անկյուններում և որոնց սպասում է նույն արդար պատիժը»։

Կասկած չկար, որ այդ «դրսի ավազակը» Արտակն է, ուստի նրան որոնելու խնդիրը մեջտեղից վերանում էր։ Այն պլանը, որ դարբին Գոտֆրիդը մշակել էր Դորայի հորն ազատելու համար, միաժամանակ Արտակին ազատելու պլան էր։

Ժամը 10-ին դուրս եկան տնից։ Քեյլերն ու Գիտնականը գնացին մի կողմի վրա, Հանսն ու Աշոտը՝ մի այլ, իսկ ինքը՝ դարբին Գոտֆրիդը վերցրեց Մհերին ու գնաց քաղաքային հրապարակ, որտեղ պիտի այն երկու «ավազակներին» կախեին՝ ի սարսափ թաքնված ավազակների։ Ժողովուրդը, մեծ ու փոքր, մարդ ու կին, թափվել էր հրապարակ, ասեղ գցելու տեղ չկար։ Դե, Թոբիլստանում զվարճություններն այնքան էլ շատ չէին (Թոբիլ Թագավորը չէր սիրում երես տալ իր հպատակներին), այնպես որ մարդիկ տեսարանների կարոտ էին։ Ու հիմի բոլորը թափվել եկել էին, որ մի կուշտ նայեն։

Մեկ էլ պալատի կամարակապ դարպասը բացվեց, ու այնտեղից դուրս եկավ թագավորական զորքը։ Բոլորն էլ բոյով-բուսաթով, մի չափսի կորիճներ, ոնց որ ուրագով տաշած ու ռանդով քաշած։ Հապա շորե՜րը, հապա բարձր գլխարկնե՜րը՝ ոսկե ցցունքով, հապա ճոճուն սապոգնե՜րը... Մի խոսքով, ոչ թե զինվոր, այլ նախշ ու նկար, պատկեր... Այդպես, թմբուկների կռկռոցի տակ եկան ու շարվեցին կախաղանի առաջ, շարվեցին ու մնացին քար կտրած։

Վերջապես բերին երկու ոճրագործներին՝ շրջապատված պահակախմբով. առջևից՝ զինված հեծյալներ, ետևից՝ զինված հեծյալներ, աջ ու ձախից՝ զինված հեծյալներ, այնքան որ վտանգավոր ավազակներ էին։ Մեկը՝ դրսից, մյուսը՝ ներսից։

— էն մեկը դեռ երեխա է,— կամացուկ ասաց դարբնի կողքին կանգնած ծերունին։

— Հա, էլի...

— Որ մեր Թոբիլ Թագավորն սկսել է երեխեքից էլ վախենալ, նշանակում է բանը վատ է...

Ոճրագործներին հանեցին տախտակամածի վրա ու կանգնեցրին կախաղանների տակ։ Դահիճը, ոտից գլուխ կարմիր հագած, սոխի պես պլպլան



գլխով, ցցվեց նրանց կողքին։ Ձեռքերը կրծքին խաչած, սպասում էր, թե երբ հրաման կտրվի գործի անցնելու։ Ամեն ինչից երևում էր, որ նրա համար մարդ կախելը կամ հավ մորթելը նույն բանն է։

(Շարունակելի)

## ՄԵՐ ԲԱԿԻ ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑԸ

*ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*



Սոսը բերել թիթեղ ու լար
Ու զանազան սարքեր
Եվ ուզում էր իբր մի լավ
Տիեզերանավ սարքել։

— Ջիմանաք, թե վախկոտ եմ ես,—
Ասում է նա,—տեսե՛ք,—
Գագարինի, Տիտովի պես
Պիտի թռչեմ տիեզերք։

Սակայն քիչ անց, մեկ էլ ահա
Թողած գործ ու իրեր,
Պատշգամբից տղան փախավ
Բակը գցեց իրեն։

Վերից տատը կանչեց.—Խելո՛ք,
Ինչու՞ այդտեղ հասար,
— Տա՛տ, հոգնեցի աշխատելով,
Քիչ չխաղա՞մ, ասա՛։

Բայց ի՞նչ հոգնել, ուրիշ բան կար,
Որ չմնաց տեղում.
Պատշգամբ էր եկել հանկարծ
Մի պզպզան մեղու։

---

# Երեք հիմարները

(Աֆրիկական հեքիաթ)

Մի անգամ ճանապարհների խաչմերուկում երեք մարդ հանդիպեցին իրար: Բայց ինչպիսի՜ մարդիկ. ոչ մեկի գլխում խելքի կտոր չկար: Երեքն էլ այնքան հիմար էին, որ հենց դրա համար իրենց տներից վռնդել էին: Եվ ահա նրանք ճամփա ելած գնում են, իրենք էլ չիմանալով, թե ուր:

Երբ հանդիպեցին իրար, ասացին.

— Ճիշտ է, հիմար ենք, բայց եթե մեր երեքի խելքը միացնենք իրար, ինչքան էլ ուզում է անխելք լինենք, էլի մի բան դուրս կգա:

Եվ որոշեցին այլևս իրարից չբաժանվել, միշտ միասին մնալ:

Մի քիչ ճանապարհ կտրելուց հետո նրանք հասան մի դաշտի, որտեղ ծեր գյուղացու մեկը գլուխը կախ իր գործի հետ էր:

Հիմարները ծերուկին քաղաքավարի բարևեցին, իսկ ծերուկն էլ իր հերթին հարցուփորձ արեց նրանց, թե այդպես երեքով ուր են գնում:

— Էհ, գնում ենք աշխարհի ճամփեքով, որպեսզի տեսնենք, թե որտեղ կարող ենք մի աշխատանք գտնել,— պատասխանեցին հիմարները:— Մեզ մեր տներից վռնդել են մեր հիմարության համար: Մեր գլխին խելք չկա, հիմար մարդիկ ենք:

— Որ էդպես է, ես ձեզ աշխատանք կտամ,— ասաց ծերուկը: Եվ վերցնելով նրանց, տարավ իր տուն, որտեղ նա ապրում էր իր երեք աղջիկների հետ:

Հաջորդ օրը ծեր գյուղացին վաղ առավոտյան տեղից վեր կացավ և հիմարներից առաջինին կարգադրեց.



— Էսօր դու կգնաս ձուկ բռնելու:

Հիմարը վերցնելով ուռկանը, գնաց դեպի այն լիճը, որտեղ ձուկ պետք է որսար:

Գյուղացին իր մոտ կանչեց երկրորդ հիմարին և ասաց.

— Դու էսօր անտառ կգնաս և լիանայից մի լավ պարան կհյուսես:

Երկրորդ հիմարը վեր կացավ և իսկույն գնաց անտառ:

Երրորդ հիմարին ծերուկը կարգադրեց.

— Դու էլ գնա կոկոս հավաքելու:

Երրորդ հիմարն էլ մի լավ փայտ վերցրեց ու գնաց կոկոսի արմավենի փնտրելու:

Առաջին հիմարն, արդեն տեղ հասած, սկսել էր ձուկ որսալ, բռնեց, բռնեց և խիստ ծարավեց: Ի՞նչ անի: Բռնած ձկները ու ուռկանը թողեց լճափին և վազելով տուն գնաց՝ ջուր խմելու:

— Բա ձկներն ու՞ր են,— հարցրեց հիմարին ծերուկը:



— Ձկները թողել եմ լճափին: Ես շատ ծարավ էի, եկել եմ տուն ջուր խմելու,— պատասխանեց հիմարը:

— Կեցցե՜ս, դու, ինչ է, լճից չէի՞ր կարող ջուր խմել:

— Մի տես է՛, իսկապես որ, բոլորովին մտքովս չանցավ,— ասաց հիմարը և այդպես էլ մնաց տանը:

Երկրորդ հիմարը մի լավ խուրձ կիտնա էր քաղել և արդեն պետք է տուն վերադառնար: Բայց ինչպե՞ս բերեր, երբ խուրձը կապելու ոչ մի բան չկար: Նա որոշեց հավաքած կիտնան թողնել անտառում, գալ տուն, որպեսզի պարան տանի:

— Ինչ է, դու չէի՞ր կարող հենց կիտնայով էլ կապել,— ասաց նրան ծերուկը:

— Մի տես է, իսկապես որ, բոլորովին մտքովս չանցավ,— պատասխանեց հիմարը: Եվ ինչպես եկել էր, այնպես էլ մնաց տանը:

Երրորդ հիմարը կոկոսի արմավենի գտնելուն պես մագլցեց ծառը, կոկոսները ցույց տվեց ձեռքի փայտին և ասաց.

— Լա՜վ նայիր այդ կոկոսներին, հենց որ քեզ շպրտեմ՝ իսկույն կպիր նրանց և ցած գցիր:

Այդ ասելուց հետո, նա սղղալով իսկույն ցած իջավ և սկսեց փայտը վեր շպրտել, որպեսզի կոկոս թափվի: Նա իր փայտն այնքան շպրտեց, որ հոգնեց ու հալից ընկավ, բայց չնայած դրան ամբողջ օրվա ընթացքում ոչ մի կոկոս ցած չգցեց: Արևը մայր մտնելու վրա էր, երբ նա հոգնած, ջարդված և դատարկ ձեռքով տուն վերադարձավ:

— Եթե ծառն էիր բարձրացել, էլ ինչո՞ւ չէիր հենց այդ նույն փայտով խփում ու ցած թափում կոկոսները,— հարցրեց նրան ծերուկը:

— Մի տես է՛, իսկապես որ, բոլորովին մտքովս չանցավ,— պատասխանեց հիմարը:

Ծերուկը տեսավ, որ այդ երեք հիմարներից էլ իսկապես ոչ մի օգուտ չի կարելի քաղել: Բայց քանի որ իր աղջիկները նրանցից պակաս դդումները չէին, ուստի ամուսնացրեց նրանց այդ մարդկանց հետ և բոլորին միասին դուրս արեց, որ գնան աշխարհով մեկ՝ ուր ուզում են:

Բայց հիմարները այնքան էլ հեռու չգնացին: Հազիվ էին բլուրն անցել, երբ կանգ առան ու ասացին.

— Եթե մենք ամբողջ աշխարհն էլ ման գանք, միևնույն է, մարդիկ մեզ միշտ էլ վռնդելու են իրենց մոտից, քանի որ մեր գլխում խելքի կտոր չկա, մենք հիմար մարդիկ ենք: Ավելի լավ է, եկեք մեզ համար մի գյուղ հիմնենք ու ապրենք այդ գյուղում:

Այդպես էլ արին: Իրենց համար հյուղակներ կառուցեցին, ցանկապատեցին դաշտերը և իրենց որդիների, թոռների և տասը սերնդի հասնող ծոռների ու նրանց հետնորդների հետ ապրեցին հանգիստ ու փառավոր:

Սակայն այդ հիմարները կարճ ժամանակում այնքան բազմացան, որ իրենց գյուղը այլևս տեղ չարեց բոլորին: Եվ ահա նրանց սերունդներից շատերը դուրս եկան իրենց պապենական հողից ու ցրվեցին աշխարհով մեկ:



Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

Հենց այս պատճառով է, որ աշխարհում ոչ մի անկյուն չկա, որտեղ որոշ թվով հիմարներ չլինեն:

Իտալերենից թարգմ. Գ. ՎԻՐԱՊՅԱՆԻ

# ԽԱԲՎԱԾ ՇՈՒՆԸ

ՀԱՅԿԱԶ ՄԵԼՅԱՆ

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Շունը մի օր խիստ զայրացավ.
— Սա հո գործ չէ, այլ գլխացավ։—
Դժգոհեց ու այդ օրվանից
Գործը թողած՝ փախավ տանից։
Գյուղի շուրջը անվերջ շրջում,
Ջոր ոսկոր էր միայն կրծում։
Մոտիկ եկավ շանը մի գայլ.
— Ի՞նչ ես անում, ա՛յ հորեղբայր։
— Որոնում եմ ոսկոր ու հաց,
Ասաց շունը լացակումած։
— Հին պահեստ է մեր ծմակը,
Ուտող չկա թարմ դմակը։
Արի գնանք, եղիր մեզ հյուր,
Կեր միս ու ճարպ, խմիր պաղ ջուր։
Ու քայլելով արագ-արագ՝
Նրանք հասան մի մութ ձորակ.
Հենց այդտեղ էլ՝ թե՛ շուն, թե՛ գայլ,
Ներս խուժեցին մի մութ քարայր։
Շունը տեսավ աչքեր դեղին,
Քիչ էր մնում պատռեր լեղին։
Գայլը կանչեց իր ծեր մորը.
Ասաց. — Եղիր դատավորը։
Ա՛յ սա էր այն «խելոք» շունը,
Որ հսկում էր լիքը տունը։
Սա է հատել և իմ պոչը,
Չի լավանում տեղի խոցը։—



Շունը ասաց. — Երդվում եմ ես,
Ուրիշ անգամ չեմ տեսել քեզ...—
Մայր գայլն էլ, թե. — Ա՛յ դու ստոր,
Անմեղ լինես թե մեղավոր,
Քանի որ մեր որջն ես եկել,
Այստեղից դուրս չես գա մեկ էլ։

# ԳԱՅԼԻ ԲԱԺԻՆԸ

ԳՐԻԳՈՐ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

*— Այ դու հազա՛ր բարի եկար, —*
*Ասաց գայլը արջին, — ախպե՛ր,*
*Խորհում էի այսօր երկար,*
*Թե ու՞մ վերցնեմ ինձ հետ ընկեր։*

*Մոտիկ գյուղում, իմ բարեկամ,*
*Կա ծկնորսի մի լավ ուռական,*
*Իսկ գետակում փրփրադեզ,*
*Ձկնիկներ կան՝ որքան ուզես։*

*Թե որ դեմ չես իմ պայմանին,*
*Ընկեր կանեմ քեզ այդ բանին,*
*Թե շահավետ պայման դնես,*
*Որտեղ դու ես, այնտեղ էլ՝ ես։*

*— Որսած ձկան կեսը տուր ինձ,*
*Եվ մեծերը մյուս կեսից.*
*Իսկ փոքրերը հալալ կիսենք,*
*Քո բաժինն էլ եփենք ուտենք։*



*Մռռաց արջը բեղի տակին,*
*Ու թաթն իջավ գայլի գլխին.*
*Ձուկը ջրում կես ես անում,*
*Իմ բաժինն էլ հե՞տը առնում։*




## ԿՈՇԻԿ-ՀՍԿԱՆ

Հսկաները սովորաբար հանդես են գալիս միայն հեքիաթներում: Բայց ահա նրանցից մեկի երկարաճիտք կոշիկը պահպանվում է մինչև հիմա և շատ է դուր գալիս գերմանացի երեխաներին:

Հսկայի կոշիկը գտնվում է Միլդենշտայնի հինավուրց ամրոցի թանգարանում: Կոշիկի ներբանի երկարությունը մեկ մետր 90 սմ. է, ճտքինը՝ 3 մետր 70 սմ. է: Կոշիկը կարել են Դյոբելն քաղաքի վեց կոշկակարներ 750 ժամում:

Դրանով, 1925 թվականին, նրանք նշեցին իրենց արհեստանոցի 600-ամյակը:



## ԱՎԵԼԻ ԼԱՎ, ՔԱՆ ԳՐԱՊԱՀՈՑՈՒՄ

Գտնում են, որ գրքերը ամենից լավ պահպանվում են գրապահոցներում՝ կլիմայական և հիգիենիկ պայմաններում:

Բայց ահա, մի քանի տարի առաջ, Անտարկտիդայում, բևեռային շրջանից ոչ հեռու, գտել են մի գիրք, որը 1913 թվականին թողել է անգլիացի ճանապարհորդ Սկոտի արշավախումբը: Գիրքը պահպանվել է ավելի լավ, քան այդ նույն ժամանակվա գրքերը՝ հատուկ պայմաններում:




## ԿԵՆԴԱՆԱԲԱՆԱԿԱՆ ԳԵՐԲ

Ավստրալիայում շատ կան զարմանալի գազաններ և թռչուններ: Նրանց ազատ չենք կարող հանդիպել ուրիշ որևէ մայր ցամաքում: Հավանական է, որ դրա համար էլ Ավստրալիայի գերբը «կենդանաբանական է»:

Նայեցեք, կենգուրուն և ջայլամը ամուր պահել են մի վահան, որը բաժանված է վեց մասի: Ավստրալիայի նահանգները այդքան են: Իսկ աջ թաթը բարձրացրած բրիտանական առյուծի կողքին կանգնած են ավստրալիական սև կարապն ու կարմրաշամփրուկ թռչնակը: Նրանցից վերև՝ կենտրոնական քառակուսում Հարավային խաչի համաստեղությունն է: Այս հետաքրքիր գերբը ամբողջությամբ զարդարված է միմոզայի նուրբ ճյուղերով:

## ՈՎ Է ԱՎԵԼԻ ԽԻԶԱԽ



Մոտոցիկլի վրա է մայոր-հրետանավոր Թոմ Հևեդհիլը: Ասում են, որ ամբողջ Անգլիայում միայն նա է այդպիսի համարձակ թռիչքներ կատարում: Բայց ովքե՞ր են այս կամավորները, որ պառկել են ցատկատախտակի տակ:

Նրանք մայորի զինվորներն են, որոնք նման ծառայություն առաջին անգամը չէ, որ մատուցում են իրենց ղեկավարին: Հազիվ թե նրանք դրանից հաճույք ստանան, մանավանդ վերջին երեքը: Ճիշտ է, մինչև հիմա թռիչքները հաջող են անցել: Միայն մի անգամ վերջին զինվորին խփեց հետևի անիվով, բայց նա հեշտ պրծավ, միայն մարմինը կապտեց:

## ՄԵԴՈՒԶԱՆ՝ ԲԱՐԵԿԱՄ ԵՎ ԹՇՆԱՄԻ



Բարենցի ծովում կան այնպիսի մեդուզաներ, որոնց շոշափուկները ունեն 15—20 մետր երկարություն, իսկ ծածկոցն ունի մեկ մետր տրամագիծ:

Այդ ծածկոցի տակ պատսպարվում են ձողաձկների ընտանիքին պատկանող բազմաթիվ մանր ձկներ: Երբ ծովը խաղաղ է, ձկնիկները լողում են մեդուզայի շուրջը և կեր որսում: Վտանգի դեպքում նրանք թաքնվում են ծածկոցի տակ: Սակայն մեդուզան միշտ չէ, որ հոգատար է: Եթե անշնորհք ձկնիկը դիպչի նրա շոշափուկներին, այլևս փրկություն չկա. մեդուզան իսկույն կուլ կտա նրան:

## ԿԱՆԱՉ ՍՈՒՏԱԿ

Բնական կարմիր սուտակը կազմված է ալյումինի անգույն օքսիդից, որտեղ ալյումինի ատոմների մի մասը փոխարինված է քրոմի ատոմներով:

Ուսումնասիրելով սուտակի կազմության գաղտնիքները, քիմիկոսները կարողացան կարմիր սուտակ արդյունահանել նաև արհեստական ճանապարհով: Արհեստական սուտակը հաջողությամբ օգտագործում են ժամացույցների և ճշգրիտ գործիքների արտադրության մեջ: Բայց քիմիկոսները ստեղծել են նաև կանաչ սուտակ՝ ալյումինի օքսիդին չափից շատ ավելացնելով քրոմի ատոմներ:

Իսկ բոլորովին վերջերս բնական սուտակը՝ բարձր ջերմության տակ տաքացնելով կարողացան վերածել կանաչ գույնի:

## ՇՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԷՋԵՐԻՑ

*Անցյալ դարի վերջին Ամերիկայում ապրում էր մի շուն-ճանապարհորդ, որի անունը Օունի էր: Նա ոչ տեր ուներ և ոչ էլ տուն: Անցնելով մի գնացքից մյուսը, նա բոլոր ուղղություններով մի քանի անգամ շրջեց երկիրը: Բոլորը շանը ճանաչում էին և նրա երևալը համարում էին հաջողության նշան: ԱՄՆ-ի երկաթուղային փոստի ծառայողները սիրում էին Օունին և երբեք նրան չէին վռնդում: Բայց շունը ոչ մեկի հետ չէր մտերմանում, նա գերադասում էր մենակ ճանապարհորդել:*

*1895 թվականի օգոստոսին Օունին գաղտնի բարձրացավ «Սուրբ Վիկտորիայի» տախտակամածը, որը ուղևորվում էր դեպի Ճապոնիա: Այնտեղից Օունին անցավ Չինաստան: Հետագայում նրան տեսան՝ Ասիայի մի շարք երկրներում, Սուեզի ջրանցքի վրա և Ազորյան կղզիներում: Նրա պատվին պատրաստեցին շքանշան, որով առաջինը հենց իրեն պարգևատրեցին: Այնքան շքանշաններ հավաքվեցին, որ Օունին ի վիճակի չէր այդ բոլորը պարանոցի վրա կրել:*



* * *

*Առաջներում Չինաստանում բազմացնում էին մարտական շների հատուկ սերունդ: Դրանք հսկայական, մոտ 170 կիլոգրամ կշռող, կատաղի շներ էին՝ առյուծի բաշով: Երկար ժամանակ այդ շների ոսկեզօծ պատկերները զարդարում էին չին սպաների ուսադիրները: Ներկայումս առյուծային շները շատ տարածված են ամբողջ աշխարհում, թեկուզ նրանց արտաքին տեսքը և ապրելաձևը անհավատալի փոխվել է: Դրանք այն փոքրիկ, բրդոտ «պեկինցիներն» են, որոնց տնտեսուհիները մեծ մասամբ ազատ չեն արձակում, այլ իրենք են տանում զբոսանքի: Նրանք վախենում են շոգից և ցրտից, կոպիտ սնունդից և ուժեղ ձայներից: Ահա, թե ինչի է հասցնում անգործությունը:*



Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

2
ՓԵՏՐՎԱՐ
1967

ՀԼԿՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

1. Լեգենդար Գայլ — Ա. ՍԱՀԱԿՅԱՆ
2. Պատմվածքներ Զայցևի մասին — ԿԼԱՎԴԻԱ ԶԱՅՑԵՎԱ, ՄԱՐԻԱ ՊՈՊՈՎԱ . . . 2
3. Վրաստանի քարտեզի առաջ — Գ. ՋԱՐԴԱԼԻՇՎԻԼԻ . . . 4
4. Վրաստանը նոր հնգամյակում — Ի. ՄԻՔԵԼԱՁԵ . . . 6
5. Ամենագեղեցիկ հեքիաթը — Գ. ՍԱՆԴԻՐԱՁԵ . . . 8
6. Հայրենի անտառ — Ս. ԽԱՐԱՋՅԱՆ . . . 11
7. Չորս ոսկեգույն կոճակ — Խ. ՀՐԱՉՅԱՆ . . . 11
8. Մեր բակի տիեզերագնացը — Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ . . . 15
9. Երեք հիմարները (աֆրիկական հեքիաթ) . . . 15
10. Խաբված ջուրը — Հ. ՄԵԼՅԱՆ . . . 17
11. Գայլի բաժինը — Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ . . . 17
12. Ինչուկ . . . 18
13. Հանգստի ժամին . . . 20

Շապիկը՝
ԵԿ. ՄԻՆԱՍ ԱՎԵՏԻՍՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41,
հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։

ՎՖ 06305։ Պատվեր՝ 10։ Տպաքանակ՝ 46.787։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 13 II 1967 թ.։
ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91։
Գինը՝ 10 կ.




## ԿԱՐՈ՞Ղ ԵՍ՝ ՇԱՐՈՒՆԱԿԻՐ

Այս խաղը կարելի է խաղալ ամբողջ դասարանով։ Պետք է ընտրել մի այնպիսի բանաստեղծություն, որ բոլորը անգիր իմանան։ Ղեկավարը խաղացողներին նստեցնում է շրջանաձև։ Նրանցից մեկը կանգնում է կենտրոնում և արտասանում։ Երբ արտասանությունը վերջանում է, ղեկավարը մոտենում է խաղացողներից մեկին և արտասանում որևէ բառ այդ բանաստեղծությունից։ Նա, ում մոտեցել է ղեկավարը, պարտավոր է արտասանել ղեկավարի ասած բառի հաջորդ բառը։

Նույն բանը կատարում են խաղի բոլոր մասնակիցները։

Չպետք է մոռանալ, որ խաղացողներին հարկավոր է դիմել ոչ թե հերթականությամբ, այլ խառն, որպեսզի նրանք չիմանան, թե որ բառից հետո է իրենց հերթը։ Նա, ով ճիշտ չի պատասխանում, դուրս է գալիս խաղից։

Հաղթում է նա, ով վերջում մենակ է մնում։

## ԳՏԻՐ ՀԱՋՈՐԴ ՏԱՌԸ

Խաղում են 3—4 հոգի։ Սկզբից պետք է պատրաստել թուղթ, մատիտ։ Խաղն սկսողը թղթի վրա գրում է որևէ տառ։ Երկրորդ խաղացողը գրված տառի կամ սկզբից, կամ վերջից ավելացնում է մեկ ուրիշ տառ։ Երրորդ խաղացողը նույնպես կատարում է նույն գործողությունը և այսպես հաջորդաբար, այնքան ժամանակ, մինչև ստացվում է մի որևէ բառ։

Օրինակ, խաղում են 3 հոգի։ Առաջինը գրում է Ն, երկրորդը ավելացնում է ՈՒ, երրորդը (առջևից) Ա և ստացվում է ԱՆՈՒ։ Հերթը նորից առաջին խաղացողինն է։ Նա անմիջապես վերջից ավելացնում է Շ տառը և խաղը տանում։ Խաղի ընթացքում յուրաքանչյուրը աշխատում է այնպիսի տառ ավելացնել, որ խանգարի մյուսին։

Եթե երրորդ խաղացողը վերջից ավելացներ Ռ տառը, կստացվեր ՆՈՒՌ բառը, և խաղը ինքը կշահեր։



## ԱՐԱԳ ՊԱՏԱՍԽԱՆ

*Խաղացողները նստում են շրջանաձև: Ղեկավարը պտտվում է շրջանում և կանգնում որևէ մեկի դիմաց: Նա արտասանում է որևէ գրողի անուն և հաշվում մինչև 3-ը: Այդ ժամանակամիջոցում խաղացողը պարտավոր է նշված գրողից մի որևէ ստեղծագործության անուն ասել: Եթե ճիշտ է ասում, նստում է իր տեղը, եթե ոչ՝ դուրս է գալիս խաղից: Խաղի ղեկավարը կարող է փոխվել միայն այն ժամանակ, երբ առաջադրում է սխալ հարց կամ հավանություն է տալիս սխալ պատասխանին:*

## ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐ



1. Խոսքի մաս: 2. Վերջածանց: 3. Խոսքի մաս: 4. Որակական ածական, դրական աստիճան: 5. Կետադրական նշան: 6. Հասարակ գոյական, ուղղական հոլով, եզակի թիվ, անորոշ առում: 7. Երկիմաստ բառ, մի դեպքում որակական ածական; այլ դեպքում՝ հասարակ գոյական, ուղղական հոլով, եզակի թիվ: 8. Սպորտի տեսակ:

Բառերը ճիշտ գտնելու և ազատ վանդակները համապատասխան տառերով լրացնելու դեպքում, կենտրոնական ուղղահայաց վանդակում կկարդաք խոսքի մասերից մեկը:

## ԶԻԳԶԱԳ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1 | ա | | | | |
| 2 | | ա | | | |
| 3 | | | ա | | |
| 4 | | | | ա | |
| 5 | | | | | ա |
| 6 | | | | ա | |
| 7 | | | ա | | |
| 8 | | ա | | | |
| 9 | ա | | | | |
| 10 | | ա | | | |
| 11 | | | ա | | |
| 12 | | | | ա | |
| 13 | | | | | ա |
| 14 | | | | ա | |
| 15 | | | ա | | |
| 16 | | ա | | | |
| 17 | ա | | | | |

Այս վանդակներում գրեցեք 17 հասարակ գոյական, բայց այնպես, որ վանդակների մեջ գրված «ա» տառի դիրքը չխախտվի:

Նույն բառը երկրորդ անգամ կրկնել չի կարելի:

## ՑԱՄԲ ԲԱՌ

Փորձեք գտնել 6 տառից բաղկացած 10 բառ և տեղադրել այս վանդակներում այնպես, որ «ա»-երի հաջորդականությունը չխախտվի:



Առաջարկները՝ Ս. ԻՇԽԱՆՅԱՆԻ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

*Անհուն, շքեղ օվկիանում*
*Հավերժահարսն է լողում.*
*Նրա շուրջը պար բռնած,*
*Մարգարիտներ են շողում:*

*Ոտքեր չունի՝ քայլում է,*
*Ձեռքեր չունի՝ գործում է,*
*Մի լավ հսկող թե լինի՝*
*Հազար մարդու գործ կանի:*

*Ունի մի աչք շատ զորեղ,*
*Թափանցում է ամեն տեղ,*
*Տեսածը չի մոռանում,*
*Անխոս վկա է դառնում:*

*Շարժական է և անշարժ,*
*Շատ լեզուներ գիտե վարժ,*
*Ամեն հարկի, ամեն տան,*
*Բարեկամն է իսկական:*

ՍՈՒՐԵՆ ՍՈՒՔԻԱՍՅԱՆ

*Լույս չունի՝*
*Լույս է տալիս,*
*Ոտք չունի՝*
*Ման է գալիս:*

*Քնում է նա*
*Աչքերը բաց*
*Ու միշտ շրջում*
*Մուշտակ հագած:*

ԱՐԱՄ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

*Ես երկաթե թութակ եմ,*
*Ինչ որ լսեմ՝ կկրկնեմ.*
*Զգույշ. լավ բան խոսիր դու,*
*Տես, կպատմեմ այլ մարդու...*

*Թևոչուն եմ, բայց թև չունեմ,*
*Որոտի ձայն կհանեմ.*
*Թե անվախ սիրտ ունենաս,*
*Ինձ լավ ընկեր կդառնաս...*

*Կանաչ այգում մի մեծ հոլ,*
*Կենդանիներ շուրջ բոլոր.*
*Ոչ ուտում են, ոչ շնչում,*
*Քեզ առնում են ու փախչում:*

ԼԵՎՈՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

